Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 18 (25)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 18 (25)

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Սով. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ — 1937

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Թերթերում հանդիպող առանձին բառերի և հասկացողությունների բացատրություն։*

---

Խմբագիր՝ *ԲԱԼԱԲԵԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*
Սրբագրիչ՝ Տ. Տերունցի
*Հրատ.* №18. *Պատվեր* № *178*
Գլավլիտի լիազոր Շ— 1256
Տիրաժ **6926**

---

*«Խորհրդ. Հայաստան»-ի հրատ. տպարան, Երևան*

«ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ՉԻ ԿԱՐՈՂ ՉԵԶՈՔ ԼԻՆԵԼ ԿՐՈՆԻ ՎԵՐԱԲԵՐՄԱՄԲ, ՅԵՎ ՆԱ ՀԱԿԱԿՐՈՆԱԿԱՆ ՊԱՅՔԱՐ Ե ՄՂՈՒՄ ԸՆԴԴԵՄ ԲՈԼՈՐ ՅԵՎ ԲՈԼՈՐ ՏԵՍԱԿԻ ԿՐՈՆԱԿԱՆ ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔՆԵՐԻ, ՎՈՐՈՎՀԵՏԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԿԱՆԳՆԱԾ Ե ԳԻՏՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԸ, ԻՍԿ ԿՐՈՆԱԿԱՆ ՆԱԽԱՊԱՇԱՐՄՈՒՆՔՆԵՐԸ ԳԻՏՈՒԹՅԱՆԸ ԴԵՄ ԵՆ ԳՆՈՒՄ, ՔԱՆԻ ՎՈՐ ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԿՐՈՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԱԿԱԴԻՐ ԻՆՉ ՎՈՐ ԲԱՆ Ե»։ (**ՍՏԱԼԻՆ**)

# ՄԱՐԴՈՒ ԾԱԳՈՒՄԸ

## ՄԱՐԴՈՒ ԾԱԳՄԱՆ ԱՌԱՍՊԵԼՆԵՐԸ

Մարդը ո՞րտեղից և ի՞նչպես է առաջացել յերկրի վրա: Այս հարցի պատասխանը փնտռել են բոլոր ժամանակների մարդիկ և բոլոր ժողովուրդները: Մարդու ծագումը բացատրելու առաջին փորձերը մենք գտնում ենք զանազան ժողովուրդների ավանդությունների մեջ: Այդ ավանդությունները ծայր աստիճան նայիվ են ու ֆանտաստիկ: Ամենանախնական ավանդությունները ասում են, վոր մարդն առաջացել է անշունչ իրերից՝ քարից, ավազահատիկից, ծովային տիղմից, անձրևի կաթիլից, բույսերից: Մի քանի հին ավանդություններում խոսվում է մարդու «յերկնային» ծագման մասին, ասում են, վոր իբր թե մարդը յերկրի վրա ընկել է լուսնից:

Ավելի ուշ ժամանակներում ավանդու-



թյուններ են առաջացել, թե՝ մարդուն ինչ վոր նյութից ստեղծել են հերոսները կամ աստվածները: Մինչև մեր որերն է հասել այն հին-յեգիպտական ավանդությունը, վորի մեջ պատմվում է, թե Խնում աստվածն առաջին մարդկանց չինել է կավից, բրուտի ճախարակով: Մի հին-հունական ավանդության մեջ նույնպես նկարագրվում է, թե ինչպես Զևս աստվածը մարդկանց քանդակել է բրուտի ճախարակով: Բիբլիական գրույցը պատմում է, վոր Յեհովան առաջին մարդուն չինել է կավից «ըստ իր պատկերի ու նմանության» և հոգի յե ներշնչել նրան: Այդ առաջին մարդը յեղել է Ադամը կամ մի ուրիշ «կավե մարդ» (հին-հրեյական լեզվով—վորով առաջին անգամ գրվել է աստվածաշունչը— «ադամա» նշանակում է «հող», «կավ»): Յերբ Ադամը քնած է յեղել, Յեհովան գաղտնի նրա կողից մի վոսկոր է հանել և դրանից ստեղծել է կին — Յեվային: Յեվ բիբլիական ավանդութունը հավաստացնում է, վոր այդ զույգից էլ առաջացել է ամբողջ մարդկային ցեղը:

Դժվար չէ գուշակել, վոր այսպիսի ավանդություններ հորինվել են արդեն այն

ժամանակ, երբ մարդկանց հայտնի չէր դարձել բրուտագործության տեխնիկան: Վաղուց անցած-գնացած ժամանակների մարդիկ, տակավին չգիտենալով բնության որենքները և ցանկանալով բացատրել իրենց ծագումը, պարզապես իրենց արտադրական փորձառությունը վերագրել են աստծուն և նրան ոժտել են բրուտի ունակություններով:

Հարկավոր է նկատել, վոր ավանդությունների մեծ մասում մարդկանց արարիչը հանդես է գալիս վոչ բոլորովին ամենակարող եյակ: Որինակ՝ հնդկական կորկու ցեղը մի ավանդություն ունի, վորի մեջ պատմվում է, թե ինչպես Մահադեո անունով աստվածը մի բուռ կարմիր կավից շինել է յերկու մարդ, բայց Մահադեոյի թշնամին — Ինդրան — ուղարկել է իր ձիերը, վորոնք կոխոտել են Մահադեոյի ստեղծագործությունը: Վերջինս նորից ու նորից է քանդակում իր մարդկանց, բայց Ինդրայի ձիերը կրկին վոչնչացնում են նրանց: Այն ժամանակ Մահադեոն իրեն ոգնության է կանչում շանը և պատվիրում նրան պահպանել կավե մարդկանց, մինչև վոր ինքը նրանց համար



հողի ճարի: Շունը կատարում է իրեն տրված պատվերը և կավե մարդկանց պահպանում է Ինդրայի ձիերից: Այդ մարդիկ, վորոնց Մահադեոն կոչել է Մուլա և Մուլայի, ըստ հնդկական ավանդության, հանդիսանում են բոլոր մարդկանց նախահայրերը:

## ՄԱՐԴԸ ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ ՀԵՏ ՄԵԿ ՄԻՍ ՈՒ ԱՐՅՈՒՆ Ե ԿԱԶՄՈՒՄ

Մարդու ծագման մասին յեղած այս բոլոր հեքիաթներն իհարկե չեն կարող բավարարել վոչ միայն ժամանակակից հասակավոր բանվորին ու կոլտնտեսականին, այլև նոր գրագիտություն սովորած դպրոցականին: Ժամանակակից մարդը գիտականորեն հիմնավորված տեղեկություններ է պահանջում յերկրագնդի վրա առաջին մարդկանց հայտնվելու մասին:

Խոսելով մարդու ծագման մասին, մենք ամենից առաջ ընթերցողներին առաջարկում ենք ուշադրություն դարձնել իրենք իրենց վրա: Ի՞նչ է տեսնում ընթերցողը:

Մարդը, բոլոր մյուս կենդանիների նման, ծնվում է, սնվում, աճում, բազմանում, ծերանում և, վերջապես, մեռնում

է: Հենց միայն այս հանգամանքը մեզ իրավունք է տալիս մարդուն համարելու մի այնպիսի էյակ, վորն ընդհանուր բան ունի բոլոր կենդանական առանձնահատկությունների հետ:

Մարդու և կենդանիների նմանությունը յերևում է նաև նրանց մարմնի կառուցվածքից: Որինակ՝ բոլոր վողնաշարավոր կենդանիների հիմքը կազմում է վոսկրե կմախքը, վորը բաղկացած է վողնաշարից, կողերից և մի շարք այլ վոսկորներից՝ կոնքից, վերջավորություններից, գանգից: Կմախքի վոսկորներն իրար հետ միացած են հոդակապերով, ծածկված են մկաններով (մսով), իսկ ամբողջ մարմինը ծածկված է մորթով: Յեթե մենք ուշադրություն դարձնենք կաթնասունների վրա — այսինքն՝ այն կենդանիների, վորոնց եգերն իրենց ձագերին կերակրում են իրենց սեփական կաթով — ապա կհամոզվենք, վոր նրանց ներքին կառուցվածքն ընդհանուր առումով այնպես է, ինչպես մարդունը: Այդ բոլոր կենդանիներն ունեն մարսողական որգան, վորը բաղկացած է բերնից ու ատամներից, կոկորդից, ստամոքսից, աղիքներից, լյարդից և մի շարք գեղձերից, վո-



րոնք անհրաժեշտ հյութեր են պատրաստում մարսողության համար: Մարսված և խյուսի վերածված կերակուրն աղիքների պատերի միջով ծծվում է արյան մեջ, իսկ արյունը, սրտի գործունեության շնորհիվ, այդ ներծծված սնունդն արյունատար անոթների միջոցով տարածում է ամբողջ մարմնի մեջ և սնուցում է որգանիզմը: Արյունը մաքրվում է թոքերից ներս մտնող թթվածնի միջոցով (թթվածին գազն ոդի կարևորագույն բաղկացուցիչ մասն է): Բոլոր կաթնասունները նույնանման կառուցվածքի ապարատ ունեն արտաթորության համար, այն է՝ ուղիղ աղիք՝ յելքի բացվածքով, յերիկամներ՝ միզածորաններով, միզափամփուշտ՝ միզատար խողովակով: Նման են նաև նրանց սեռական որգանները: Մարդը, ինչպես և կենդանիների մեծ մասը, ունեն նյարդային սիստեմի խիտ ցանց, ինչպես նաև զգայարաններ՝ քիթ, ականջներ, աչքեր, վորոնք արտաքին զգացողությունները հաղորդում են ուղեղին:

Մենք մարդուն համեմատեցինք բարձր կարգի կենդանիների՝ վողնաշարավորների հետ, մասնավորապես կաթնասունների

հետ: Սակայն յեթե մենք հետաքրքրվենք մարդու արգանդային (սաղմային) զարգացմամբ, ապա կհամոզվենք, վոր մարդը նմանություն ունի նույնիսկ ամենապարզ կառուցվածքն ունեցող կենդանիների հետ:

Իսկապես, մարդը սաղմնավորվում է կնոջ ձվարջիջից, իսկ այդ ձվիկն այնքան փոքր է, վոր յերևում է միայն խիստ մեծացնող ապարատի (մանրադիտակ) միջոցով: Այդպիսի փոքրագույն ձվիկներ դուրս են գալիս կնոջ ձվարաններից ամիսը մեկ անգամ: Այդ ձուն բեղմնավորվում է տղամարդու սերմնակենդանիներով (վորոնք նույնպես յերևում են միայն մանրադիտակի միջոցով), ամրանում է արգանդում և ըսկըսում է զարգանալ: Սկզբնական շրջանում մարդու սաղմի զարգացումը հիշեցնում է ամենանախնական կենդանիներին, այսպես կոչված միաբջիջներին, վորոնք բաղկացած են միայն մի «բջիջից», վորը կենդանի նյութի մի գնդիկ է՝ թաղանթով շրջապատված: Այս բջիջի մեջ վորևէ առանձին որգան գտնել հնարավոր չէ:

Մոտ մի ամսվա ընթացքում մարդու սաղմը հասնում է մոտավորապես մի սանտիմետր մեծության: Այս շրջանում գլխի



մասը դեռ թույլ է ձևավորված լինում, վզի մասում կան ծալքեր, վորոնք հիշեցնում են ձկան խռիկներ, մարմնի ներքևի մասը վերջանում է համեմատաբար յերկար պոչով, վերջավորությունները (ձեռքերը, վոտքերը) հազիվ են նշմարվում և հիշեցնում են լողաթաղանթներ: Այդ սաղմի փորի վրա կան յերկու շարք ստինքներ: Յեթե մարդու միամսյա սաղմը համեմատենք մի այլ կենդանու (ճագար, կատու, շուն և այլն) զարգացման նույն աստիճանի վրա գտնվող սաղմի հետ, ապա չափազանց կըդժվարանանք այդ յերկուսն իրարից տարբերել: Մարդու սաղմի զարգացման ընթացքում աստիճանաբար անհետանում են խռիկային ծալքերը, պոչը, ավելորդ ստինքները (բացի յերկուսից), աճում և ձևավորվում են վերջավորությունները, կլորանում է գլուխը, զարգանում են ներքին որգանները: Բայց և այնպես նույնիսկ 4–5 ամսական հասակում մարդկային սաղմը ծածկված է լինում մազերով (ինչպես բոլոր կաթնասուններինը), վորոնք անհետանում են մոտավորապես վեցերորդ ամսվա վերջում (բացի գլխի մազերից):

Ի՞նչ է վկայում, ինչո՞վ է բացատրվում

մարդու արդանդային (սաղմային) զարգացման այս պատկերը: Այդ վկայում է, որ մարդն ազգակից է բոլոր կենդանիներին, այդ բացատրվում է նրանով, որ մարդն ու կենդանիներն ունեն ընդհանուր ծագում:

Պատկերավոր արտահայտված՝ մարդը կենդանական աշխարհի հետ մեկ միս ու արյուն է կազմում: Հենց այս պատճառով է, որ մարդն իր արդանդային (սաղմային) զարգացման ընթացքում կարծես թե կույրի գծերով կրկնում է իր նախահայրերի զարգացման պատմությունը, այն կենդանիների պատմությունը, որոնք գոյություն են ունեցել հարյուր միլիոնավոր տարիներ առաջ, ինչպես այդ լավ հաստատված է ժամանակակից գիտությամբ:

## ԱՐԴՅՈ՞Ք ՄԵՆՔ ՊԵՏՔ Է ԱՄԱՉԵՆՔ ՄԵՐ ԾԱԳՈՒՄԻՑ

Մարդը, արդանդային զարգացման ընթացքում աստիճանաբար ավելի ու ավելի ազատվելով կենդանական գծերից, այնուամենայնիվ ծնունդից հետո էլ պահպանում է այդ գծերից շատերը: Պահպանվում են



նույնիսկ տիպիկ կենդանական օրգաններ, որոնք բոլորովին կամ գրեթե բոլորովին հարկավոր չեն մարդուն: Համառոտակի թվենք այդ ավելորդ օրգաններից մի քանիսը: Օրինակ՝ «մնացորդ» օրգան է հանդիսանում կույր աղիքի որդանման հավելվածը, այսպես կոչված ապենդիքսը, որը չի մասնակցում մարսողության գործողությանը: Մենք գիտենք, որ դրա հեռացումը չի անդրադառնում մարսողության վրա, ծերության հասակում այդ հավելվածը սովորաբար փոքրանում է և երբեմն ամբողջովին կորչում: Այդ ապենդիքսը խիստ կարևոր օրգան է կենդանիների մոտ, հատկապես խոտակեր կենդանիների. սակայն մարդու մոտ դա պահպանվել է որպես մի ժամանակ գործող, իսկ այժմ արդեն որպես անպետք դեռաղ՝ վերասարքավորված նոր մեխանիզմի վրա: Ապենդիքսը զգալի չափով նույնիսկ վնասակար օրգան է դարձել մարդու համար. երբ նրա մեջ կերակրի մի որևէ կոշտ մաս է ընկնում, հաճախ առաջ է գալիս ապենդիքսի բորբոքում, որը հայտնի չէ ապենդիցիտ անունով (կույր աղիքի բորբոքում):

Մարդն ամբողջապես չի ազատված նաև

պոչից, վորը պահպանված է փոխված ու ծալկված վիճակում և հայտնի յե պոչուկ անունով (գավակի շարունակություն): Մարդու պոչի այս «մնացորդը» բաղկացած է մի քանի փոքր վողներից: Մարդն ունի նաև մի շարք մնացորդ մկաններ: Որինակ՝ բոլորին հայտնի յե, վոր կենդանիները հատուկ մկանների միջոցով ընդունակ են շարժելու իրենց ականջները և մարմնի մորթի վորոշ մասերը: Այդպիսի մկաններ անզարգացած վիճակում պահպանվել են նաև մարդու մոտ: Հազվադյուտ (աննորմալ) դեպքերում, յերբ այդ մկանները փոքր ինչ ավելի յեն զարգացած լինում, մարդը կարողանում է վորոշ չափով շարժել իր ականջները կամ թե գլխի կաշին:

Վերևում հիշատակված, ինչպես և չհիշատակված շատ այլ մնացորդ որգանները հատուկ են ամեն մարդուն: Սակայն, բացի այս ռուդիմենտներից (չզարգացած որգաններից), հազվադյուտ դեպքերում առանձին մարդկանց մոտ հանդիպում են նաև այլ կենդանական նշաններ, վորոնք արդանդային սխալ զարգացման արդյունք են լինում



և համարվում են այլանդակություն: Որինակ՝ խիստ հազվադյուտ դեպքերում այնպիսի մարդիկ են ծնվում, վորոնք ունենում են արտաքին պոչ, կամ ամբողջապես մազով ծածկված մարմին, կամ թե յերկուսից ավելի ստինք: Այդպիսի աննորմալությունները կոչվում են «ատավիզմ» (վերադարձ դեպի նախնիների հատկությունները):

Հայտնի յե, վոր մարդու ժանիք-ատամները սրածայր են և յերբեմն սովորականից ավելի յեն դուրս ցցված լինում ատամնաշարքից: Այս ատավիստական յերևույթի առթիվ Դարվինը — անգլիացի մեծ բնագետ, վորը հայտագործել և բացատրել է բուսական ու կենդանական աշխարհի զարգացման որենքները — ասել է. «Ով վոր արհամարհանքով ժխտում է այն միտքը, թե՝ իր սեփական ժանիքների ձևը և այլ մարդկանց ժանիքների պատահական մեծությունը ժառանգված են մեր հին նախահայրերից,—վորոնք ունեյին այդ սարսափելի զենքը,— նա կարող է իր ծնողաբանությունը մատնել առաջին իսկ ծիծաղի դեպքում», այսինքն՝ բերանը բանալով:

Հավատացյալ, տգետ և հետամնաց մարդկանց համար նույնիսկ վիրավորական

է թվում իրենց և կենդանիների հնարավոր ազգակցության միտքը: Նրանք գերադասում են իրենց ծննդաբերությունն ակսել կավաշեն Ադամից, այդ ավելի պատվավոր համարելով: Այդպիսի սահմանափակ մարդկանց համար կարելի յե միայն կրկնել նույն Ջարլզ Դարվինի խոսքերը. «Ամենահամեստ օրգանիզմն այնուամենայնիվ անհամատեղելի յե մեր վոտքի տակ յեղած բարձր անօրգանական փոշու հետ, և չայլասերված բանականությունը չի կարող վորևե կենդանի եյակ ուսումնասիրել, նույնիսկ ամենաստորին եյակը, առանց զարմանալու դրա հրաշալի կառուցվածքից և յուրահատկություններից»: Այս ֆրազով Դարվինը ճիշտ տեղին է խփում բոլոր նրանց, ովքեր ամաչում են իրենց կենդանական ծագումից:

## ՅԵԿԵՂԵՑՈՒ ՊԱՅՔԱՐԸ ՄԱՐԴՈՒ ՄԱՍԻՆ ՅԵՂԱԾ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԴԵՄ

Ժամանակակից գիտության համար մարդու կենդանական ծագումը հանդիսանում է անհերքելի ճշմարտություն: Այս ճշմարտությունը բացվել է գիտության դանդաղ,



բազմադարյան զարգացման շնորհիվ: Մարդու վերաբերյալ գիտության զարգացման համար աշխատող գիտնականներն ստիպված են յեղել հսկայական պայքար մղել ամեն տեսակ հետադիմականների ու խավարամոլների դեմ և իրենց ճանապարհին հաղթահարել վիթխարի դժվարություններ: Գիտնականներն իրենց հայտնագործությունների համար աքսորվում եյին, վտարվում իրենց հայրենիքից, իսկ նրանցից մի քանիսը նույնիսկ վրա եյին տալիս իրենց կյանքը:

Գիտական նոր հայտնագործությունների ամենավոխերիմ թշնամին միշտ յեղել է յեկեղեցին — հավատարիմ ծառան հարուստների, շահագործող դասակարգերի, վորոնք ձգտում են աշխատավոր լայն մասսաներին պահել անշարժության ու տգիտության մեջ: Շահագործող դասակարգերը փորձում են հավատացնել աշխատավորությանը, վոր բոլոր գոյությունները սուրբ են, բանական, մի անգամ ընդմիշտ սահմանված աստծու կողմից: Ուստի սուրբ է նաև մարդու կողմից մարդուն շահագործելու գոյություն ունեցող կարգը: «Աղքատություն միշտ կլինի յերկրիս վրա»— ասում է աստ-

վածաշունչը: Հետևաբար, պետք է գոյություն ունենան չքավորներին շահագործող հարուստներ: Դա, ասում են, մարդկանց ստեղծող տեր աստծու կամքն է:

Միանգամայն հասկանալի յէ, վոր շահագործողների շահերը պաշտպանող յեկեղեցին ամեն մի նոր հայտնագործություն հայտարարում է «աստվածային օրենքների» խախտում: Նա խստորեն հարձակվում է ամեն մի գիտության վրա, վորը խախտում կամ ժխտում է մարդու ստեղծման մասին յեղած բիբլիական բարբաջանքները:

Յեկեղեցին բացառիկ դաժանությամբ դատաստան է տեսել վոչ միայն այն գիտնականների նկատմամբ, վորոնք բացեիբաց հերքում եյին բիբլիական առասպելը, այլև այն գիտնականների նկատմամբ, վորոնք միայն բարեխղճորեն ուսումնասիրում եյին մարդու և կենդանիների կազմությունը: Որինակ՝ յեկեղեցին հերետիկոս հայտարարեց և խարույկի վրա այրեց շվեյցարական գիտնական Սերվետին, վորն ապրում եր 400 տարի առաջ և ուսումնասիրում եր մարդու արյան շրջանառությունը: Մի ուրիշը, — Սերվետին ժամանակակից բժիշկ



Վեզալիյը — հալածվեց իր հայրենիքից և մեռավ հանելուկային պայմաններում: Յեկեղեցու կողմից սարսափելի հալածանքի յեն յենթարկվել նաև 16-րդ դարի ականավոր անգլիացի գիտնական Հարվեյը և շատ ուրիշներ:

Ինկվիզիցիան*), պայքարելով մարդու աստվածային ծագման մասին յեղած առասպելը հաստատելու համար, մահվան եր դատապարտում բոլոր նրանց, ովքեր չունեյին «աստծու պատկեր ու նմանություն», այսինքն՝ բնականից այլանդակ, ատավիստական նշաններ ունեցող մարդկանց: Ինկվիզիցիան այդ մարդկանց հայտարարում եր սատանայի ծնունդ, իսկ նրանց մայրերին մեղադրում եր «կախարդության» մեջ, այսինքն՝ «պիղծ ուժերի» հետ հարաբերու-

---

*) Ինկվիզիցիան մի սոսկալի դատական ատյան եր կաթոլիկ յեկեղեցու գործադրած հետամտության ու տեռորի որգանը: Ինկվիզիցիան ծագում առավ 13-րդ դարի սկզբին և պահպանվեց մի քանի յերկրներում (Իսպանիա և Իտալիա) մինչև 19-րդ դարի կեսերը: Ինկվիզիցիան հռչակվեց իր հրեշավոր ու գազանային դատաստաննե-

թյուն ունենալու մեջ։ Այդպիսի «կախարդներին» և յենթարկում էյին դաժանագույն տանջանքների, ստիպում էյին «խոստովանել» իրենց մեղսագործությունը։ Երբ նրանք չկարողանալով տանել սարսափելի տանջանքները, համաձայնում էյին խոստովանելու իրենց «մեղքը», նրանց այրում էյին խարույկների վրա։ Անցյալում բավական թվով «կախարդներ» են մահապատժի յենթարկվել նաև Ռուսաստանում։ Յեկեղեցին այդպիսի դատաստան էր տեսնում բոլոր նրանց հետ, ովքեր հաճելի չէյին իրեն, վորովհետև դրանից մեծ ոգուտ էր ստանում. մահապատժի յենթարկվածի ամբողջ կարողությունը, յեկեղեցական դատարանի վճռի համաձայն, բռնագրավվում

բով, վոր «հերետիկոսության» դեմ պայքարելու պատրվակով սարքում էր բոլոր նրանց նկատմամբ, ովքեր այս կամ այն պատճառով հաճելի չէյին կաթոլիկ յեկեղեցուն և բացարձակ (անսահմանափակ) միապետությանը։ Իր դաժանություններով հատկապես աչքի յեր ընկնում իսպանական ինկվիզիցիան, վորը բազմաթիվ մարդկանց խարույկ է հանել և սարսափելի չարչարանք-



եր հոգում յեկեղեցու «սուրբ հայրերի»։

Այնուամենայնիվ յեկեղեցուն չհաջողվեց կասեցնել գիտության զարգացումը։ Միշտ, նույնիսկ ամենավայրագ ռեակցիայի ժամանակները, գտնվել են իրենց գիտական գործունեյությունը շարունակող գիտնականներ։ Նրանք այդ բանն արել են գաղտնի կերպով, և վոմանք նույնիսկ չեն ստորագրել իրենց աշխատությունները։ Վոմանք էլ — ավելի աներկյուղներն ու անվեհերները — չէյին վախենում դաժան մահապատժի յենթարկվելուց, իրենց գլուխը չէյին խոնարհում ռեակցիայի առաջ և չէյին հրաժարվում գիտական ճշմարտությունները քարոզելուց։ Այդ գիտնականների հիշատակըն առանձնապես թանգ է մեզ՝ ԽՍՀՄ-ի

ներով տանջել։ Ժամանակակից ֆաշիստական մոլագարներն ու խավարամոլները, վորոնք ֆաշիստական յերկրներում հարություն են տվել միջնադարյան բոլոր սարսափներին և անլուր, գազանային տեռորի յեն յենթարկում աշխատավորներին, հեղափոխականներին ու հակաֆաշիստներին, ամբողջովին «յուրացրել են» ինկվիզիցիայի պատմական «ժառանգությունը»։

աշխատավորների, անդասակարգ սոցիալիստական հասարակակարգ կառուցողների համար, այն երկրի, որտեղ «կուսակցությունը, — ինչպես նշել է ընկեր Ստալինը, — վարում է գիտության ամեն կերպ պաշտպանող քաղաքականություն»:

## ԴԱՐՎԻՆԻ ՈՒՍՄՈՒՆՔԻ ԷՅՈՒԹՅՈՒՆԸ

Անցյալ դարի կեսերին արդեն շատ տեղեկություններ էին հավաքված, որոնք հաստատապես հավաստում էին մարդու կենդանական ծագումը: Սակայն դեռ հայտնի չէին այն օրենքները, որոնց ազդեցությամբ կենդանական և բուսական աշխարհը ենթարկվում է փոփոխությունների կամ էվոլյուցիայի:

Դարվինին հաջողվեց այդ օրենքները հայտնագործել և բացատրել: Մենք հնարավորություն չունենք այստեղ թեկուզ և համառոտակի շարադրել Դարվինի էվոլյուցիոն ուսմունքը, այլ ստիպված ենք սահմանափակվել միայն դրա մի քանի դրույթները հիշատակելով.

1. Բոլոր կենդանիներն ու բույսերն առանձնահատկություն ունեն ժառանգելու նախորդ սերունդների հատկանիշները, հիմ-



նական տարբերիչ գծերը: Այս առանձնահատկությունը կոչվում է ժառանգականություն: Բայց բնության մեջ անշարժ, անփոփոխ ոչինչ չկա: Ժառանգականությունը գործում է կենդանի աշխարհի մի այլ առանձնահատկության՝ փոփոխականության հետ զուգակցված. այս երկրորդ առանձնահատկությունն արտահայտվում է այն բանում, որ միևնույն տեսակ բույսերի կամ կենդանիների մեջ չեն լինում բացարձակապես նույնանման անհատներ, միշտ զավակները որոշ չափով տարբերվում են թե իրարից և թե իրենց ծնողներից:

2. Կենդանի օրգանիզմներին հատուկ է հսկայական արգասավորություն (պտղաբերություն): Մենք բոլորս գիտենք, թե ինչպիսի արագությամբ ու առատությամբ են բազմանում մկները, խոզերը, ճագարները և այլ կենդանիներ: Հայտնի է, որ մի շարք ձկներ մի անգամից ածում են մի քանի հազար ձկնկիթ (ձու): Մենք գիտենք նմանապես, որ յուրաքանչյուր բույս, յուրաքանչյուր խոտ տալիս է մեծ քանակությամբ սերմ: Եթե յուրաքանչյուր բույսից և կենդանուց ծնվեր այնքան սե-

րունդ, որքան նրանք ընդունակ են արտադրելու, և եթե այդ ամբողջ սերունդն ապրեր, ապա նրան չէր բավականացնի ոչ երկրի տարածությունը և ոչ էլ բնության մեջ եղած ուտելիքը: Ցեթե, օրինակ, մի որևէ լճակում կամ գետում ձըկան մի անգամ դրած ձկնկիթները բոլորն էլ տային կենսունակ սերունդ, ապա դրա համար չէր բավականացնի ոչ տեղը, ոչ սնունդը, էլ չենք խոսում այն մասին, որ այդ բազմաթիվ սերունդը դուրս կմղեր լճակի մյուս բոլոր բնակիչներին: Նույնիսկ փիղը, որը համեմատաբար դանդաղ է բազմանում, մի քանի հարյուր տարվա ընթացքում կգրավեր ամբողջ երկրագունդը, եթե ոչինչ չխանգարեր նրա բազմացմանը, և ծնված ամբողջ սերունդն ապրեր: Սակայն աշխարհ եկած բոլոր կենդանիներն ու բույսերը չեն ապրում: Նրանց մի մասը որս է դառնում ավելի ուժեղ գիշատիչներին կամ մարդուն, մի մասն էլ մեռնում է հիվանդություններից, սնունդի պակասությունից և այլ աննպաստ պայմաններից:

3. Ապրում են միայն ավելի հարմարված սերունդները, այսինքն՝ նրանք, որոնք ժառանգել են ապրելու համար նպաստավոր



հատկանիշներ. ապրում են ավելի ուժեղներն ու արագաշարժները, որոնք ընդունակ են սնունդ ձեռք բերելու և ժամանակին թաքնվելու թշնամուց, ապրում են նրանք, որոնք մարմնի ավելի հարմար գույն ունեն և տվյալ վայրում քիչ են նկատվում գիշատիչների կողմից և այլն: Այսպիսով, բնության մեջ կարծես թե ընտրվում են ավելի դիմացկուն տեսակները, որոնք գոյության կռվի ընթացքում ձեռք են բերում նոր, ապրելու համար նպաստավոր հատկություններ և ժառանգաբար այդ հատկությունները փոխանցում են իրենց սերունդներին: Իր հերթին այդ սերունդներն էլ գոյության կռվի ու հարմարվելու ընթացքում կատարելագործում են իրենց նախնիքներից ստացած հատկությունները և ձեռք են բերում նոր հատկություններ: Այս ընտրությունը, որն անընդհատ տեղի յե ունենում բնության մեջ, Դարվինը կոչել է բնական ընտրություն: Փոփոխականությունը և ժառանգականությունը միասին համդիսանում են բնական ընտրության հզոր զենք: Ժառանգականության շնորհիվ հետնորդների մեջ ամրանում են հին, օգտակար հատկությունները, փոփոխականու-

թյան շնորհիվ սերունդից-սերունդ այդ հատկությունները կատարելագործվում են և ձեռք են բերվում նոր հատկություններ, վորոնք ավելի յեն ուժեղացնում հարմարված անհատների հարմարվողականությունը և նպաստում են նրանց հետագա գոյությանը:

4. Օրգանիզմի այն փոփոխությունները, վորոնք բնական պայմաններում տեղի յեն ունենում մի քանի սերունդների ընթացքում, համեմատաբար փոքր են լինում և դժվար են նկատվում, իսկ հաճախ նույնիսկ հնարավոր չի լինում նկատել: Սակայն կենդանի եյակների փոփոխելիության մեջ հեշտությամբ կարելի յե համոզվել անասնաբույծների և բուսաբույծների փորձով: Բոլորին հայտնի յե, վոր վերջիններս մարդու շահերի տեսակետից ավելի արժեքավոր նմուշներ արհեստական ընտրության միջոցով ստանում են ամենաբազմազան, առաջ բնության մեջ գոյություն չունեցող բույսերի ու կենդանիների տեսակներ: Բավական ե մատնանշել արհեստականորեն ստացված ձիերի, վոչխարների, կովերի, շների տեսակների մեծ բազմազանությունը: Չափազանց բազմազան են նաև



արհեստական ճանապարհով ստացված բույսերի տեսակները: Հենց արհեստական ընտրության փորձով Դարվինին հաջողվեց հայտնագործել և ուսումնասիրել բնական ընտրության օրենքը, մի ընտրություն, վոր շարունակ տեղի յե ունենում բնության մեջ: Այս ընտրությունը վորքան ել դանդաղ ընթացած լինի բնական պայմաններում, այնուամենայնիվ հարյուր հազարավոր ու միլիոնավոր տարիների ընթացքում բույսերն ու կենդանիներն այնպիսի խիստ այլեցություն են կրել այդ ընտրության շնորհիվ, վոր վերջիվերջո առաջացել ե կենդանիների ու բույսերի տեսակների անհամար բազմություն:

## ՄԱՐԴՈՒ ԱՄԵՆԱՄԵՐՁԱՎՈՐ ԱԶԳԱԿԻՑՆԵՐԸ

Մեր այս բոլոր ասածներից դժվար չե հասկանալ, վոր կենդանիների առանձին տեսակների արտաքին ու ներքին կառուցվածքն ուսումնասիրելով, մենք կարող ենք դրանց դասավորել ըստ նմանության աստիճանների, իսկ այդ մեզ հնարավորություն կտա գաղափար կազմել նրանց ազ-

պակցության աստիճանի մասին։ Այլ խոսքով՝ մենք կարող ենք վորոշել, թե կենդանիների վոր տեսակն է սկիզբ հանդիսացել մյուսին։ Միանգամայն հասկանալի յե, վոր ավելի հետագայի ձևեր։ Այս հարցի հետանիները պետք է համարվեն ավելի վաղեմի ձևեր, իսկ ավելի բարձր որգանիզմները՝ ավելի հետագայի ձևեր։ Այս հարցի հետազոտության համար մեծ նյութ են տալիս յերկրաբանությունը*) և հնեաբանությունը**)։ Այս գիտությունների մասնագետները հաստատել են, վոր յերկրագնդի առավել հին շերտերում բույսի ու կենդանիների վոչ մի հետք կամ մնացորդ չկա։ Միայն յերկրի այն շերտերում, վորոնք կազմված են մի քանի հարյուր միլլիոն տարի առաջ, սկսում են հանդիպել մի ժամանակ ապրած պարզագույն միաբջիջ եյակների մնացորդները։ Այնուհետև, յերկրի շերտերի հնության նվազման հետ միասին, հանդիպում են նախնական պարզագույն բազմաբջիջ կենդանիներ, ապա գալիս են պարզագույն

*) Յերկրաբանությունը (գեոլոգիա) գիտություն է յերկրի մասին, վորն ուսումնասիրում է յերկրի զարգացման բոլոր աստիճանները՝ յերկրի առաջացման մոմեն-



բարավորներ (այսինքն՝ այնպիսի կենդանիներ, վորոնք վողնաշարի փոխարեն ունեն միայն մի կռճիկալար)․ յերկրի ավելի յերիտասարդ շերտերում գտնվում են պարզագույն վողնաշարավորների մնացորդներ, ապա՝ կաթնասունների և, վերջապես, մարդու մնացորդներ։

Մարդու հնագույն նախահայր, այսպես կոչված պիտեկանտրոպի — մարդակապիկի (սրա մասին մանրամասն կխոսենք ներքևում) կմախքի մնացորդները հայտնաբերված են յերկրի այն շերտերում, վորոնց հնությունը չի անցնում մի միլլիոն տարուց։ Այսպիսով գիտնականները վերականգնում են կենդանի եյակների զարգացման շղթան՝ սկսած պարզագույն միաբջիջ

տից սկսած և բացատրում է յերկրի փոփոխությունները։

*) Հնեաբանությունը (պալեոնտոլոգիա) մի գիտություն է, վոր հետազոտում է այժմ անհետացած բույսերն ու կենդանիները, վորոնք առաջ գոյություն են ունեցել յերկրի վրա և պահպանվել են յերկրի ընդերքում բրածո մնացորդների, գլխավորապես վոսկորների ձևով։

կենդանիներից մինչև ամենաբարձր կազմություն ունեցող կենդանիները՝ մարդիկ:

Իհարկե, մեզ առաջին հերթին հետաքրքրում են այն կենդանիները, վորոնք սկիզբ են տվել մարդուն: Ծանոթանանք դրանց հետ թեկուզ թռուցիկ կերպով:

Շատ վաղուց, յերբ դեռ Դարվինը չեր մշակել իր ուսմունքն ուշադրություն եր դրավում այն զարմանալի նմանությունը, վոր մարդն ունի կապիկի հետ, հատկապես այսպես կոչված բարձր կարգի կապիկների հետ՝ Գիբբոնի, Որանգուտանի, Գորիլայի և Շիմպանզեյի, վորոնք այդ նմանության պատճառով կոչվում են մարդանման կապիկներ: Բնորոշ ե, վոր դեռ 17–18-րդ դարերում մի քանի յեվրոպական գիտնականներ այդ կապիկներին համարում եյին անտառի մարդկանց հատուկ ցեղ:

Յեվ իսկապես, մարդանման կապիկներն իրենց մարմնի կազմությամբ ավելի շատ են նման մարդուն, քան մյուս կենդանիները: Այդ կապիկներն ունեն հնգմատանի վերջավորություններ՝ յեղունգներով (մի հատկանիշ, վոր չունեն մյուս կենդանիները), վորոշ չափով ընդունակ են կանգնելու և ուղիղ քայլելու: Նրանք իրենց մատներով



ընդունակ են մարդու նման շատ նուրբ գործողություններ կատարելու: Նրանց ուղեղը խիստ զարգացած ե և իր կազմությամբ շատ չի տարբերվում մարդու ուղեղից: Նրանց արյան կազմությունը նույնպես խիստ հիշեցնում ե մարդու արյունը: Մարդանման կապիկները նույնիսկ ընդունակ են քարեր ու փայտեր ոգտագործելու, վորպես զենք, իսկ գերության մեջ հեշտությամբ սովորում են ուտելիս գործածել դգալ, պատառաքաղ, բաժակ և այլ ամաններ: Նրանց հղությունը տևում ե գրեթե այնքան, վորքան մարդունը, և նրանք ծնում են 1—2 ձագ: Մի խոսքով, կասկած չկա, վոր հենց այդ կապիկները, հատկապես Գորիլան ու Շիմպանզեն, մեր ամենամերձավոր ազգակիցներն են հանդիսանում:

Սակայն, այս բոլոր նմանություններով հանդերձ, մարդու և մարդանման կապիկների միջև կան նաև զգալի տարբերություններ, վորոնք ցույց են տալիս, վոր մարդն ու այդ կապիկներն ուղղակի ազգակիցներ չեն, այլ թե մարդը և թե ժամանակակից կապիկներն առաջացել են մի ընդհանուր, այժմ անհետացած նախահայրերից: Այսպիսի յեզրակացության եյին

յեկել գիտնականները դեռ հարյուր տարի առաջ: Սակայն այդ միայն գուշակություններ ու ենթադրություն: Իսկ Դարվինը գիտականորեն հիմնավորեց այս տեսակետը:

## ԱՇԽԱՏԱՆՔՆ Է ՍՏԵՂԾԵԼ ՄԱՐԴՈՒՆ

Դարվինը, իր ամբողջ հանճարեղությամբ և ամբողջովին առած իր ուսմունքի անհերքելիությամբ հանդերձ, այնուամենայնիվ լիովին չբացահայտեց ու չհասկացավ մարդու բուն ծագման պրոցեսը: Դրա պատճառն այն է, որ նա մարդու էվոլյուցիային մոտենում էր ճիշտ այնպես, ինչպես մյուս բոլոր կենդանիների էվոլյուցիային, մի տեսակ հավասարության նշան դնելով նրանց միջև: Ճիշտ է, Դարվինն ընդգծում է մարդու՝ մյուս կենդանիներից ունեցած որակական տարբերությունները, որոնք կայանում են աշխատելու, իր մտքերը խոսքով արտահայտելու և այլ ընդունակությունների մեջ. սակայն Դարվինը փորձում էր այս առանձնահատկությունները սաղմային վիճակում գտնել նաև կենդանիների մոտ: Նրա կարծիքով, մարդու զարգացման պրոցեսում (էվոլյուցիա) միայն զարգացել



են կենդանիների մոտ կաշկանդված այդ հատկությունները: Այսպիսով մարդու ծագման պատճառները բացահայտելու ասպարեզում Դարվինը կանգ առավ կես ճանապարհին:

Դարվինի սկսած գործն ավարտեցին Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը: Վերջինս իր «Աշխատանքի դերը կապկի մարդացման պրոցեսում» գրքի մեջ հետևյալ կերպ է նկարագրում կապկի՝ մարդու փոխվելը: Հարյուր հազարավոր տարիներ առաջ տաք կլիմա ունեցող մի որևէ տեղ ապրում էր բարձր զարգացման հասած կապիկների մի ցեղ: Այդ կապիկները խմբերով ապրում էին ծառերի վրա: Ծառեր մագլցելու և ցած սողալու շնորհիվ այս կապիկների առջևի ու հետևի վերջավորությունները հարմարվեցին զանազան տեսակ գործողությունների. առջևի վերջավորությունները ձեռք բերին բռնելու ընդունակություն, իսկ հետևիններն ավելի պետքական դարձան մարմնի ծանրությունը պահելու համար: Ծառերից իջնելուն և գետնի վրա ապրելուն զուգընթաց նրանց առջևի վերջավորությունները կամաց-կամաց դադարեցին քայլելու համար գործածվելուց: Ձեռք բե-

րելով բռնելու ընդունակություն, այդ առջևի վերջավորություններն ավելի ու ավելի սկսեցին կատարել ձեռքի դեր, իսկ հետևիները՝ ոտքի: Այդ կապիկներն աստիճանաբար սկսեցին ավելի ուղիղ քայլվածք ընդունել, իսկ այդ հանգամանքը վճռական մոմենտ հանդիսացավ կապկի մարդ դառնալու պրոցեսում, որովհետև ուղիղ քայլվածքի շնորհիվ ձեռքն ազատ դարձավ: Այդ ժամանակից սկսած ձեռքն սկսում է ավելի հարմարվել սնունդ հավաքելուն և թշնամուց պաշտպանվելուն, ավելի յե կատարելագործվում: Մասնավորապես պատահաբար գտած քարերով ու փայտերով ոգտվելը պետք է սովորական յերևույթ դառնար մեր հեռավոր նախահայրերի կյանքում, քանի վոր դա նրանց արտակարգ ոգուտ եր տալիս թշնամիներից պաշտպանվելիս: Քարերն ու փայտերն ոգտագործելով վորպես իսկական զենք, մեր հեռավոր նախահայրերը, անկասկած, պատահաբար գտած քարերն ու փայտերն ոգտագործելուց պետք է անցնեյին դրանցից ավելի հարմարներն ընտրելուն, իսկ այնուհետև՝ պետք յեղած ձևի ու չափի քարեր կոտրատելուն ու փայտեր



կոտրելուն: Այսպիսով ստեղծվեց առաջին արհեստական զենքը, ձեռքով պատրաստված, իսկ դա սկիզբ դրեց աշխատանքին — այդ հզորագույն ֆակտորին, վորն սկսեց մեր նախահայրերին ավելի ու ավելի բաժանել կենդանիներից: Ահա թե ինչու Ենգելսը գրում է, վոր աշխատանքն է ստեղծել մարդուն:

Բայց միայն քարերից ու փայտերից ոգտվելու ընդունակությունը չեր դառնա մեր հասկացողության համապատասխան աշխատանք, յեթե մեր հեռավոր նախահայրերը հասարակական կենդանիներ չլինեյին: Աշխատանքը հանդիսանում է մարդկային հասարակության բնորոշ հատկանիշը և դրա զարգացման հիմքը:

Կյանքի աշխատանքային յեղանակն անկասկած պետք է աչքի ընկնող դեր խաղար նաև մեր նախահայրերի մարմնի ձևավորման մեջ: Որինակ, աշխատանքի ընթացքում ձեռքերը պետք է ավելի ու ավելի կատարելագործվեյին: Ահա թե ինչու Ենգելսը գրում է, վոր «այսպիսով ձեռքը սոսկ աշխատանքի որգան չէ, այլ նաև դրա արդյունքն է»:

Այնուհետև աշխատանքն այլ, ավելի կար-

րևորագույն հետևանքներ է ունեցել. աշխատանքի ազդեցությամբ պետք է ավելի ու ավելի կատարելագործվեյին մարդու մտավոր (հոգեկան) ընդունակությունները և պետք է ծագեր խոսքի կարիք:

Այս առթիվ Էնգելսը գրում է. «... աշխատանքի զարգացումն անհրաժեշտաբար նպաստեց հասարակության անդամների ավելի սերտ համախմբմանը, այնպես վոր դրա շնորհիվ ավելի հաճախակի դարձան փոխադարձ օգնության, համագործակցության դեպքերը, և այս համագործակցության օգտակարությունը պարզ դարձավ յուրաքանչյուրի համար: Կարճ ասած՝ ձևավորվող մարդիկ հասան այնտեղ, վոր կարիք զգացին վորևէ բան ասելու միմյանց: Կարիքն ստեղծեց իր օրգանը. կապիկի անզարգացած կոկորդը դանդաղորեն, սակայն հաստատապես վերափոխվեց աստիճանաբար զարգացող մոդուլացիայի (ձայնի ելևէջ) միջոցով, և բերանի օրգանները հետզհետե վարժվեցին հոդորոշ հնչյուններ արտասանելու իրար հետևից»: Այսպիսով հասարակականությունն ու աշխատանքը հիմնական ֆակտորներ հանդիսացան, վորպեսզի կապիկը վերածվի մարդու:



Դարվինի ստեղծած էվոլյուցիոն թեորիան, Մարքսի ու Էնգելսի թեորիայով հարստացած, ամբողջական գիտություն է հանդիսանում մարդու ծագման (անտրոպոգենեզ) վերաբերյալ:

## ՄԱՐԴԱԿԱՊԻԿՆԵՐ

Դարվինի էվոլյուցիոն ուսմունքը կատաղի վայնասուն առաջ բերեց յեկեղեցականների մեջ: Դարվինի և իր ուսմունքի վրա սկսեցին հարձակումներ տեղալ բոլոր հետադիմականները: Այդ զարմանալի չէ, քանի վոր էվոլյուցիոն ուսմունքը,—ինչպես նշել են Մարքսն ու Էնգելսը, — կործանիչ հարված հասցրեց բիբլիական առասպելին: Ուստի Դարվինը միանգամայն իրավացի յեր, յերբ յենթադրում եր, վոր քիչ հետադիմականներ չեյին գտնվի, վորոնք հաճույքով փայտ կկրեյին այն խարույկի համար, վորի վրա պատեհ առիթին կարելի կլիներ այրել Դարվինին իր ուսմունքի հետ միասին: Բայց գիտության բախտից վաղուց անցել եր այն ժամանակը, յերբ յեկեղեցին ուներ տեսակի այնպիսի կազմակերպություն, ինչպիսին եր ինկվիզիցիան: Այժմ յեկեղեցականներին վոչինչ չեր մը-

նում անելու, բացի միայն մոլեգին չարությամբ փչչալուց: Ի դեպ, ռեակցիայի ներկայացուցիչներն իրենք շուտով հասկացան, վոր Աստվածաշնչի ուղղակի պաշտպանությունը դատապարտված է անհաջողության: Այդ հանգամանքը նրանց ստիպեց փոխել իրենց տակտիկան:

Յեկեղեցականներին օգնության յեկան տերտերականությամբ զբաղվող գիտնականները, վորոնք փորձում եյին ապացուցել, վոր մարդու կապկային ծագման վերաբերյալ Դարվինի պնդումները վոչնչով չեն ապացուցված: Յեթե իսկապես մարդը առաջացել է կապկից, — ասում եյին նրանք, — ապա պետք է գոյություն ունենային կապկի և մարդու միջև անցողական եյակներ, վորոնց մնացորդները, սակայն, վոչ մի տեղ չեն հայտնաբերված: Սրան Դարվինը պատասխանում եր, վոր կապկից մարդու անցնող եյակների բրածո մնացորդների բացակայությունը բոլորովին չի արատավորում եվոլյուցիոն ուսմունքն իր ամբողջությամբ. պատահական պատճառներով այդպիսի մնացորդներ դեռ չեն գըտնըված, բայց հետագայում անպայման կը գտնվեն:



Յեվ իսկապես, Դարվինի «Մարդու ծագում» գիրքը լույս տեսնելուց 20 տարի հետո, 1891—1893 թվականներին, հոլանդացի բժիշկ Դյուբուան մի նշանակալից հայտնագործություն կատարեց — գտավ մի գանգի կափարիչ, ազդոսկր և մի քանի ատամ: Այդ գանգի կափարիչը գիտնականներին ստիպեց խորհրդածել: Դա կապկային գծեր ուներ, բայց միևնույն ժամանակ ուղեղի մասի տարողությամբ մոտ մեկուկես անգամ գերազանցում եր ամեն մի մարդանման կապկի գանգի տարողությունը և միայն մի քիչ փոքր եր մարդկային գանգից: Ինչ վերաբերում եր ազդոսկրին ու ատամներին, ապա դրանք շատ քիչ եյին տարբերվում մարդկայինից: Հիշյալ մնացորդները գտնվել եյին յերկրի հին շերտերում, իսկ այդ շերտերը յերկրաբանների կարծիքով գոյացել են մոտ մեկ միլիոն տարի առաջ, այսինքն՝ այն ժամանակ, յերբ ժամանակակից տիպի մարդ դեռ գոյություն չուներ յերկրի վրա: Հաշվի առնելով այս հանգամանքը և գտնված վոսկորների կառուցվածքի առանձնահատկությունները, Դյուբուան միանգամայն ճիշտ կերպով վորոշեց, վոր գտնված վոսկորները պետք է

պատկանելիս լինեն մի այնպիսի էակի, վորը միջին տեղ է բռնում կապկի ու մարդու միջև: Դյուբուան այդ էակը կոչեց պիտեկանտրոպ, այսինքն՝ մարդակապիկ: Դատելով ազդրի ձևից, պիտի կարծել, վոր այդ պիտեկանտրոպն արդեն քայլում եր յերկու վոտքով: Հետևաբար նրա ձեռքերն ազատ են յեղել և այլևս չեն գործածվել մարմինն առաջ շարժելու համար, վորով նա տարբերվել է կապկից և նման է յեղել մարդուն:

Սակայն պիտեկանտրոպի հայտնագործումը զինաթափ չարեց տերտերականությամբ զբաղվող գիտնականներին: Այսպես, օրինակ, հայտնի հետադեմ գիտնական Ռ. Վիրխովը, օգտվելով այն հանգամանքից, վոր այդ հայտնագործությունը դեռ միակն է հանդիսանում, փորձում եր պնդել, թե Դյուբուայի գտածները մարդու վոսկորներ են, գանգը յերկար ժամանակ մնալով յերկրի հսկայական շերտի ծանրության տակ՝ փոխել է իր սկզբնական ձևը: Վիրխովն իր այս պնդումով ցանկանում եր յերկու նապաստակ խփել, այն է՝ վարկաբեկել Դյուբուայի հայտնագործությունը և ապացուցել մարդու վաղեմությունը: Ճիշտ է,



Վիրխովը լռության եր մատնում այն հանգամանքը, վոր պիտեկանտրոպը հարյուր հազարավոր տարիների հնություն ունի, իսկ բիբլիական առասպելի համաձայն աստված մարդուն ստեղծել է ընդամենը 5—6 հազար տարի առաջ, բայց և այնպես նրան բացահայտորեն չեր հաջողվում իր ասածների ծայրը ծայրին կպցնել: Զգալով իր դիրքի խախտությունը, Վիրխովն շչեդրինյան նահանգապետի նման, վորոշեց փորձել «արգելել գիտությունը»: Օրինակ, նա բուրժուազիային առաջարկում եր արգելել դպրոցներում եվոլյուցիոն ուսմունքի դասավանդումը, պատճառաբանելով, վոր այդ ուսմունքն անաստվածություն քարոզելով՝ նպաստում է մասսաների հեղափոխականացմանը:

Սակայն Վիրխովն ու իր դաշնակիցները շուտով վերջնական պարտություն կրեցին եվոլյուցիոն ուսմունքի դեմ մղած իրենց պայքարում: 1907 թվականին Հայդելբերգ քաղաքի մոտ (Գերմանիա), յերկրի նույնպիսի հին շերտում, ինչպես Դյուբուայի հայտնագործած վոսկորների շերտը, գտնվեց մի վիթխարի ծնոտ, վորն իր ձևով կապկային եր, բայց ատամներով՝ ամբող-

ջապես մարդկային։ Բոլոր առավել մեծ գիտնականներն այս նոր գտնված ոսկորը ճանաչեցին որպես մարդակապկի ծնոտ։

Վերջին 5—6 տարվա ընթացքում Բեյպինի մոտ, Չինաստանում, նույնպես հայտնաբերվեցին մարդակապկի ոսկորների բազմաթիվ մնացորդներ, որոնց մեջ կան գրեթե ամբողջ մանկական կմախքներ։ Չինական մարդակապիկները, որոնք կոչվում են սինանտրոպ. հատկապես կարևոր նշանակություն ունեն մարդու զարգացման գիտության համար։ Յեթե Ենգելսը միայն ենթադրում էր, որ սկզբնական շրջանում մեր կապկանման նախահայրերը պետք է քարերն ու փայտերն օգտագործած լինեյին որպես զենք, ապա սինանտրոպների գտնվելուց հետո Ենգելսի մտքերն ամբողջովին հաստատվեցին. սինանտրոպների ոսկորների հետ միասին գտնվեցին կայծքարի բազմաթիվ բեկորներ, որոնք արհեստական մշակման բացահայտ հետքեր են կրում։ Այդ հայտնագործության շնորհիվ գիտությունը կարող է գաղափար կազմել մարդակապկի առաջին գործիքների և արտադրական հնարավորությունների մասին։ Վերջապես, սինանտրոպների մնացորդների



հետ միասին գտնված են նաև կրակի հետքեր։ Սա ցույց է տալիս, որ մարդակապիկները գիտեյին կրակի օգուտը և գործածում եյին կրակը։

Ներկայումս չկա ոչ մի գիտնական — յեթե չհաշվենք բացահայտ տերտերականներին — որը ժխտի մարդու զարգացման մարդակապկային աստիճանը։

## ԲՐԱԾՈ ՄԱՐԴԻԿ

Դեռ 1848 թվականին Ջիբրալթարում գտնվեց գրեթե մի ամբողջական գանգ, իսկ 1856 թվականին Նեանդերթալ հովտում (Գերմանիա) գտնվեց մի գանգի կափարիչ։ Այդ յերկուսն ել, անկասկած, մարդկային ոսկոր եյին հանդիսանում, բայց մի տեսակ տարորինակ, մեր ժամանակաշրջանում անհայտ յեղող մարդկային տիպի, որի ճակատը նեղ և հետ ընկած իսկ հոնքավերևի ոսկորները խիստ դուրս են ցցված։ Այն ժամանակ այս գյուտին առանձին նշանակություն չտրվեց։ Բայց, յերբ Դարվինը հրապարակեց իր «Մարդու ծագում» աշխատությունը, մասնավորապես, յերբ Դյուբուան նկարագրեց իր գտած

մարդակապկի մնացորդները, պարզ դարձավ, որ Ջիբրալթարում և Նեանդերթալում գտնված ոսկորները մնացորդներ են հանդիսանում հնագույն մարդկանց, որոնք անցողական եյակներ են յեղել մարդակապկի ու ժամանակակից մարդու միջև: Ջիբրալթարում ու Նեանդերթալում գտնված գանգերը համեմատաբար ավելի քիչ կապկային և ավելի շատ մարդկային հատկանիշներ ունեն, քան պիտեկանտրոպի ոսկորները: Այս տիպի մարդը կոչվեց նեանդերթալյան մարդ:

Հաջորդ տասնամյակների ընթացքում Յեվրոպայում, Ասիայում, Աֆրիկայում և Ավստրալիայում հայտնաբերվեցին նույն այդ նեանդերթալյան տիպի եյակի մնացորդներ (որոնց մեջ կան նաև դրեթե ամբողջական կմախքներ): Այդ բոլորը գտնվել են յերկրի այնպիսի շերտերում, որոնք, յերկրաբանների կարծիքով, ունեն 500 հազար տարվանից մինչև 50 հազար տարվա հնություն: Այժմ ամեն մարդ, նույնիսկ ոչ-մասնագետը, համեմատելով մարդանման կապկի, պիտեկանտրոպի, սինանտրոպի, նեանդերթալյան և ժամանակակից մարդու գանգերը, հեշտությամբ



կարող է համոզվել, որ իր առջև գտնվում են այնպիսի եյակների գանգեր, որոնք հանդիսանում են կապկից մարդուն անցնելու մի շարք աստիճաններ:

Նեանդերթալյան մարդկանց մնացորդների հետ միասին հայտնաբերված են նաև նրանց բնակավայրերի հետքերը — գտնված են բազմաթիվ ոսկորներ այժմ անհետացած այն կենդանիների, որոնց որսում եյին նեանդերթալյան մարդիկ, կրակի և քարե գործիքների մնացորդներ, որոնք բաղկացած են բավական լավ տաշված կտրիչներից, քերիչներից ու մանր սրածայր քարերից:

Հայտնաբերված նեանդերթալյան կմախքներից մի քանիսը կրում են արհեստական թաղման բացահայտ հետքեր. սովորաբար դրանք պառկած են կողքի վրա, կիսով չափ կծկված դրությամբ, հատկապես քնածի դիրքով, իսկ նրանց կողքին գտնվում են քարե գործիքներ: Ինչպես յերևում է, նեանդերթալյան մարդիկ մահը նմանեցնում եյին քնին, ուստի իրենց ննջեցյալներին քնած մարդու դիրք եյին տալիս և տեղավորում եյին մեկուսի վայրերում, գլխավորապես քարան-

ձավներում: Այսպիսով, արդեն ամենահեռավոր ժամանակներում, երբ մեր նախահայրերը դեռ նոր էին մարդկային վիճակի անցնում, վայրենության և բնության ուժերի լիակատար անզորության հողի վրա ծնունդ են առել «անդրշիրիմյան կյանքի» հավատի սաղմեր, մի հավատ, որը մինչև այժմ պահպանված է ամենախավարամիտ մարդկանց մոտ:

Համեմատաբար մեզ շատ բան է հայտնի ժամանակակից տիպի բրածո մարդկանց մասին: Այս ուղղությամբ կան հարյուրավոր հայտնագործություններ — գտնված են այս մարդկանց ոսկորների ու աշխատանքի գործիքների բազմաթիվ մնացորդներ (դրանցից ամենահները հայտնաբերված են երկրի այն շերտերում, որոնք գոյացել են մոտավորապես 50—40 հազար տարի առաջ): Այս մարդկանց գանգերն արդեն չունեն ճակատի խիստ թեքություն և դուրս ցցված հոնքավերևի աղեղներ: Նրանց կզակը խիստ առաջ է ընկած, մինչդեռ նեանդերթալյան մարդու կզակը դեպի հետ է քաշված, թեև մի քիչ ավելի պակաս չափով, քան մարդակապիկներինը: Առաջ ընկած կզակը զուտ մարդկային հատկանիշ է



և սերտորեն կապված է ձայնական ապարատի զարգացման հետ: Մեր բրածո նախահայրերի ունեցած այս հատկանիշը վկայում է, որ մի քանի տասնյակ հազար տարի առաջ նրանք արդեն տիրապետում էին հոդորոշ խոսքին, իսկ հմտությամբ պատրաստված նրանց բազմաթիվ քարե ու ոսկորե գործիքները (հարվածող, ծակող, կտրող գործիքներ, նիզակներ, շաղափներ, ասեղներ և այլն) վկայում են, որ խոսքն առաջ է եկել տեխնիկայի ու հասարակական կառուցվածքի զարգացման կապակցությամբ: Այսպիսով, լիովին արդարացավ Մարքսի ու Էնգելսի ժամանակին հայտնած այն միտքը, թե արտադրության և հասարակական հարաբերությունների բարդացումը կազմում է խոսքի ծագման հիմքը:

## ԸՆԴԴԵՄ ՄԱՐԴՈՒ ՄԱՍԻՆ ՅԵՂԱԾ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԿԵՂԾՄԱՆԸ

Դարվինի էվոլյուցիոն ուսմունքը մեծ դարաշրջան կազմեց գիտության զարգացման մեջ: Սակայն, ինչպես վերևում նշեցինք, Դարվինը չհասկացավ, որ կապիկ՝

մարդու փոխվելու պրոցեսը խիստ տարբեր է մյուս կենդանիների զարգացման պրոցեսից։

Հետադիմականները չհապաղեցին այս թերությունն օգտագործելու։ Երբ գնալով Դարվինի ուսմունքի օգտին նորանոր ապացույցներ հավաքվեցին և Աստվածաշնչի նկատմամբ հավատն սկսեց նվազել, բուրժուազիայի գիտնական պաշտպանները փորձեցին դարվինիզմն օգտագործել իրենց տերերի կեղեքչական շահերի համար։ Նրանք սկսեցին հավատացնել, որ մարդկանց անհավասարությունը, մի կողմի անչափ հարստությունն ու մյուս կողմի ծայրահեղ աղքատությունը հետևանք են բնական ընտրության, որ իբր թե «լավ հարմարվածները» ձեռք են բերում յուղոտ պատառները, իսկ «վատ հարմարվածներին» բաժին են մնում կրծոտանքները։ Այլ խոսքով՝ հարստությունն ու աղքատությունը, տիրապետությունն ու հպատակությունը — այդ բոլորը կանխորոշել է ինքը բնությունը։ Սրանից ուղղակի հետևություն էր արվում, թե շահագործվող, կարիքի ու քաղցի մեջ տառապող մասսաները չպետք է դանդատվեն կապիտալիզմից, քա-



նի որ բնությունն ինքն է հանդիսանում նրանց թշվառության սկզբնապատճառը։

Այսպիսով հին պատմությունը կրկնվում էր նոր լեզվանակով. առաջ պնդում էին, թե հարստությունն ու աղքատությունը սահմանել է ինքն աստված, իսկ այժմ աստծուն փոխարինեց բնությունը։ Երկու դեպքում էլ այն է դուրս գալիս, որ շահագործվող մասսաները չպետք է ապստամբեն հարուստների և ունևորների իշխանության դեմ։

Առանձնապես մեծ գիտունություն հարկավոր չէ՝ հասկանալու համար, որ միայն խարդախ մեքենայությունների ու ամենաանխիղճ խեղաթյուրման միջոցով կարելի է Դարվինի էվոլյուցիոն ուսմունքն օգտագործել որպես հակահեղափոխության զենք։

Պետք է հիշել, որ կենդանական աշխարհում գոյության կռիվ է տեղի ունենում մարմնապես ուժեղների ու թույլերի միջև, որ կենդանիների մի մասը մեռնում ու կործանում է սնունդի պակասության պատճառով, որ ֆիզիկապես ավելի ուժեղներն ու հարմարվածներն ուտում են իրենցից ավելի թույլերին։ Իսկ դասակարգային շահա-

գործական մարդկային հասարակության մեջ հարստության և իշխանության տեր են հանդիսանում վոչ յերբեք ֆիզիկապես լավագույններն ու ուժեղները, վոչ մտավորապես ավելի զարգացածները: Դասակարգային հասարակության մեջ գերիշխանությունը պայմանավորվում է վոչ թե բնական ձիրքերով, տաղանդով, աշխատասիրությամբ և ուրիշ դրական հատկություններով, այլ արտադրության միջոցների սեփականությամբ, հարստության մեծությամբ, վորոնք պահպանում է պետական իշխանությունը: Ժամանակակից մարդկային հասարակության մեջ, վորն ունի բարձըր տեխնիկա և մեծապես զարգացած արտադրական ուժեր, չկա սնունդի և գոյության մյուս միջոցների պակասություն: Այդ միջոցները լիուլի կբավականացնեյին բոլորին: Դասակարգային հասարակության մեջ գոյություն ունեցող անհավասարությունը հիմնված է արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վրա և դրանից բխող՝ լիուլի յեղած գոյության միջոցների անհավասար բաշխման վրա: Բավական է մատնանշել, վոր կապիտալիզմի պայմաններում ճգնա-



ժամերն ու գործազրկությունն առաջ են գալիս ապրանքների վոչ թե պակասությունից, այլ գերարտադրությունից, վորովհետև այդ ապրանքները չեն սպառվում ժողովրդական մասսաների աղքատության պատճառով, քանի վոր աշխատավորները միջոց չունեն այդ հսկայական քանակությամբ ապրանքները ձեռք բերելու համար: Իսկ բուրժուազիան իր կողոպտած բարիքները ձրի տալ չի ցանկանում: Յեվ նա վոչնչացնում, այրում, ծովն է թափում մթերքների լեռներ, նա ծովերն ու գետերն է լցնում միլիոնավոր գալոններով նավթ, շոգեմեքենաների հնոցներում այրում է միլիոնավոր փթերով հացահատիկ և այլն, և այլն: Յեվ նա այս բոլորն անում է, վորպեսզի պահպանի բարձր գները, պահպանի իր հսկայական շահույթները և դրա հետ միասին՝ իր տիրապետությունն ու իշխանությունը: Այս է գոյության կռվի իսկական պատկերը շահագործական հասարակության մեջ: Այս է կապիտալիստական հասարակության գայլային օրենքը, մի հասարակություն, վորը բուրժուազիան և իրեն սպասարկող գիտնականները հայտարարում են բնության «հավի-

տենական» ու «անփոփոխ» օրենք: Այս բանը հարկավոր է բուրժուազիային, վորպեսզի պահպանի իր ուժը և մարդկանց բաժանված պահի կուշտերի ու քաղցածների, հարուստների ու աղքատների, շահագործողների ու շահագործվողների: Իհարկե, խավարամոլ գիտնականներն այս բոլորը շատ լավ գիտեն, բայց շահագործական կարգը պահպանելու և հիմնավորելու համար նրանք շարունակում են պնդել, թե դասակարգային անհավասարությունը հետևանք է բնական ընտրության: Նրանք «լավագույն» հայտարարում են բուրժուազիային, իսկ «վատագույն»՝ աշխատավորներին: Իմպերիալիստական գիշատիչների կողմից գաղութային ժողովուրդների կողոպտումն ու ճնշումը վորպես թե գիտականորեն հիմնավորելու համար, կապիտալի ծառա գիտնականները (հատկապես ֆաշիստական խավարամոլները) բոլոր գաղութային գունավոր ժողովուրդներին կպցնում են «ստորին» ցեղ անունը, վորոնք իբր թե «հենց բնության կողմից նախասահմանված են» աշխատելու սպիտակ իմպերիալիստների համար, իսկ այս վերջիններս այլ կերպ կոչվում են «բարձր» ցեղ:



Ենգելսը հազար անգամ իրավացի յեր, յերբ գրում եր, վոր կապիտալիզմի պաշտպանները, գոյության կռիվն ու մրցակցությունը հռչակելով «բնության հավիտենական օրենք», դրանով իսկ հաստատում են, վոր դասակարգային հասարակությունը մի այնպիսի հասարակություն է, վորտեղ իշխում է գազանային իդեոլոգիա: Վորքան թույլ ու անօգնական է դառնում բուրժուազիան, վորքան ավելի յե սրվում դասակարգային պայքարը, մահվան դատապարտված շահագործող դասակարգերն այնքան ավելի հաճախակի յեն դիմում այս գազանային իդեոլոգիային: Այս բանին օրինակ կարող են ծառայել ֆաշիստական յերկրները, մասնավորապես հիտլերյան Գերմանիան, վորտեղ «բարձրերի» (բուրժուազիայի) տեռորը «ստորինների» (աշխատավորության) նկատմամբ հասել է ծայրագույն աստիճանի, վորտեղ մարդաատեցությունը և ազգային ու ցեղային ատելության հրահրումն ընդունել են զուտ գազանային ձև:

Բնորոշ է, վոր ֆալսիֆիկացիայի յենթարկված «դարվինիզմի» հետ արդեն հաճությամբ պատրաստ են հաշտվելու այն

տերտերականացած գիտնականները, վորոնք առաջ այնպես մոլեգնորեն հալածում եյին եվոլյուցիոն ուսմունքը: Օրինակ, Հիտլերի գլխավոր ճորտ գիտնական պրոֆեսոր Լենցը վերջերս գրում եր, վոր քրիստոնեյական որենքը բնավ չի փոխում դարվինիզմը, վորի եյությունը, նրա կարծիքով, կայանում ե այն բանում, վորպեսզի ապացուցի, թե բնական ընտրությունն որենք ե հանդիսանում վոչ միայն կենդանիների համար, այլև մարդկանց... Ահա թե ինչու, — հայտարարում ե Լենցը, — ֆաշիզմի խնդիրն ե հավասարապես պաշտպանել թե՛ «դարվինիզմը» (ֆաշիզմը լկտիաբար փորձում ե այդ անունով կոչել իր ցեղաբանական զառանցանքները) և թե քրիստոնեյությունը: Այսպիսով ստեղծվում ե տերտերների ու գիտության խաբեբաների դաշինք, վորոնք միասնական ուժերով աշխատում են ֆաշիզմի փառքի համար:

Մարդու մասին կեղծ գիտության խեղաթյուրման դեմ, ցեղային մոլագարության դեմ, ինչպես նաև կրոնի ու յեկեղեցու դեմ մղվող պայքարը մեզ՝ խորհրդային քաղաքացիներիս համար հանդիսանում ե սոցիալիզմի նորանոր հաղթանակների



համար մղվող պայքարի ընդհանուր ճակատի մի կարևորագույն մասը, սոցիալիզմ, վորի պայմաններում տեղ չկա կապիտալիզմի գազանային որենքներին, տեղ չկա մարդու կողմից մարդու շահագործմանը:

Մ. Ս. ՊԼԻՍԵՑԿԻ

(«Спутник агитатора» № 15-ից)

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

## ԹԵՐԹԵՐՈՒՄ ՀԱՆԴԻՊՈՂ ԱՌԱՆՁԻՆ ԲԱՌԵՐԻ ՅԵՎ ՀԱՍԿԱՑՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲԱՑԱՏՐՈՒԹՅՈՒՆ

Աբսենտեիզմ — *Ֆրանսիական «աբսանս» բառից է, վորը նշանակում է բացակայություն: Սովորաբար աբսենտեիզմ բառով նշում են ընտրողների բացակայելն ընտրություններից, նրանց անտարբեր վերաբերմունքը դեպի ընտրությունները և ընտրություններին մասնակցելուց խուսափելը: Աբսենտեիզմ — տարածված յերևույթ է կապիտալիստական յերկրներում, ուր նա հիմնականում առաջանում է բուրժուական պարլամենտարիզմի նկատմամբ մասսաների անվստահությունից և այլն: Մի շարք դեպքերում աբսենտեիզմն ընտրությունների մասսայական դեմոնստրատիվ բոյկոտի բնույթ է ստանում: Այսպես, օրինակ՝ Լեհական սեյմի (պառլամենտ)*



*վերջին ընտրությունների ժամանակ, վորն առաջին անգամն եր անցկացվում նոր, ֆաշիստականացած ընտրական սիստեմով, աբսենտեիզմն ընդգրկել եր ընտրողների մեծամասնությունը: Ընտրություններին մասնակցում եր ընտրողների միայն 28 տոկոսը: Ժողովրդական մասսաներն այդ ճանապարհով ցուցադրեցին իրենց բողոքը դեպի ֆաշիստական ընտրական օրենքը, ցուցադրեցին իրենց անվստահությունը և թշնամանքը հիտլերյան Գերմանիայի ցուցմունքներով գործող լեհական ներկա կառավարության:*

Անտիկ — *Հնադարյան, վերաբերվում է հին Հունաստանի և Հռոմի գոյության ժամանակաշրջանին:*

Յերաշխավոր — *Հանձնարարող: Միջազգային հարաբերությունների բնագավառում այդպես է կոչվում այն պետությունը, վորը յերաշխավորվում է այլ պետությունների կողմից վորոշակի պայմանագրերի և համաձայնությունների կատարման համար, այսինքն՝ պարտականություն է ստանձնում ուժով կանխել նրանց կողմից այդ պայմանագրերի և համաձայնությունների խախտման հնարավոր փորձերը:*

Օրինակ՝ Անգլիան հանդիսանում էր միմյանց վրա չհարձակվելու Լոկարնոյի պայմանագրի երաշխավորը, որը կնքված էր Ֆրանսիայի, Գերմանիայի և ուրիշների միջև 1925 թվին։ Այլ կերպ ասած, Անգլիան պարտավորվել էր զինված ուժով պաշտպանել, օրինակ, Ֆրանսիային, եթե Գերմանիան խախտի այդ պայմանագիրը (և, ընդհակառակը, պաշտպանել Գերմանիային, եթե խախտողը Ֆրանսիան կլինի)։ Սակայն, երբ 1936 թ. մարտին Գերմանիան խախտեց Լոկարնոյի պայմանագիրը և իր զորքերը մտցրեց Հռենոսյան շրջանը, Անգլիան, ինչպես հայտնի է, հասկացնել տվեց, որ ինքն անհակամետ է կատարելու երաշխավորության իր պարտավորությունները։

«Ցերկաթյա գվարդիա» — Ռումինական ֆաշիստական կազմակերպության կոչում, որը հանդիսանում է գերմանական ֆաշիզմի ֆիլիալը (բաժանմունքը, ճյուղավորումը), նրա ուղղակի գործակալությունը։ Գեներալ Կանտակուզինի և ռումինական ֆաշիզմի պարագլուխ Կոդրեանի գլխավորած «Ցերկաթյա գվարդիա» Ռումինիայում զարգացել է 1927 թ. հիմնադրած «Միքայել



Արխանգել» սև հարյուրակային միությունից, որը հիմնականում հենվում է ուսանողության ռեակցիոն խավի և ապադասակարգայնացված ինտելիգենցիայի վրա։

Գերմանիայում ֆաշիզմի կողմից իշխանությունը գրավելուց հետո ռումինական «Ցերկաթյա գվարդիան» խիստ ուժեղացրեց իր հակահրեական և շովինիստական գործունեությունն ու պրոպագանդան ընդդեմ պարլամենտական կարգերի և ֆաշիստական Գերմանիայի հետ մերձենալու համար։ Միաժամանակ Ռումինիայում լայն չափով ստեղծվում է գերմանական «CA»-ի և «CC»-ի*) ձևով ու նմանությամբ շտուրմավիկների և յերկաթյա գվարդիականների ջոկատներ։ Ընդօրինակվեցին նաև գործողության մեթոդները՝ բացվեց տեռորիստական ակտերի սերիա, որի հետևանքով առաջին զոհերից մեկն ընկավ ռումինական վարչապետ Դուկան։

«Ցերկաթյա գվարդիայի» արգելումից հետո նա փոխեց իր ցուցանակը (այնպես,

*) Գերմանական ֆաշիզմի զինվորական կազմակերպությունների կրճատված անուններ։

ինչպես այդ արին ֆրանսիական ֆաշիստները, որոնք իրենց «Մարտական խաչեր» կազմակերպությունը վերանվանեցին «Ֆրանսիական սոցիալիստական կուսակցություն» անունով) և այժմ շարունակում է գործել «բոլորը ժողովրդի համար» դեմագոգիկ անվան տակ, ստանալով առատաձեռն նպաստ Գերմանիայից: Միլիարդներով լեյաների (լեյա ռումինական դրամական միավոր) հետ միասին Գերմանիայից Ռումինիա սիստեմատիկաբար զենք է մատակարարվում: 1937 թ. ապրիլի 14-ին «Երկաթյա գվարդիան» (Նոր կոչումը չսպասեց) ֆաշիստական հեղաշրջման փորձ ձեռնարկեց, բայց անհաջող:

Ռումինիայի սարկացումը նշանավոր տեղ է գրավում գերմանական ֆաշիզմի կողմից ԽՍՀՄ-ի դեմ նախապատրաստվող «մեծ պատերազմի» պլաններում: Գերմանական ֆաշիզմը ձգտում է Ռումինիան վեր ածել իր համար ռազմաստրատեգիական պլացդարմի (զինադաշտ) և ռազմա-հումքային բազայի (Գերմանիան համարյա նավթ չի արտադրում, մի բան, որ անչափ անհրաժեշտ է ավիացիայի, տանկերի և մոտոմեխանիզացիայի յենթարկված մա-



սերի ռազմական գործողությունների համար. այն ինչ Ռումինիան նավթից շատ հարուստ է՝ նրա տարեկան հանույթը կազմում է մոտ 8 միլիոն տոնն: Գերմանիան տառապում է սովից. Ռումինիան հարուստ է ցորենով, յեգիպտացորենով և այլն): Ռումինիան Գերմանիային յենթարկելու «պատվավոր» միսիան դրված է «Երկաթյա գվարդիայի» վրա: Գերմանական ֆաշիզմի և նրա գործակալության՝ «Երկաթյա գվարդիայի» վրա: Գերմանական ֆաշիզմի և նրա գործակալության՝ «Երկաթյա գվարդիայի» դիտավորությունները և նպատակները լավ հայտնի յեն: Բայց և այնպես ռումինական իշխանությունները «Երկաթյա Գվարդիայի» — մարդասպանների, տեռրորիստների այդ բանդայի հանդեպ ցուցաբերում են զարմանալի համբերատարություն:

Իլյուզիա — Պատրանք, սուտ, յերևակայությամբ ստեղծած հաճախ իրականությունից ամբողջապես կտրված, իսկ յերբեմն և ուղղակի իրականության հակառակ ինչ որ իրերի, փաստերի և յերևույթների մասին պատկերացում: Իլյուզիայի ազդեցության տակ գտնվող մարդը, համապա-

տասխան փաստերը և յերևույթները տեսնում է՝ վարդագույն, ավելի բարվոք լույսի տակ, քան այդ կա իրականության մեջ: Հաճախ իլյուզիաներն ընդգրկում են մարդկանց զգալի խավեր, խոշոր վնաս հասցնելով աշխատավորության ազատագրման և և մարդկության առաջադիմության գործին: Այսպես, օրինակ՝ պացիֆիստական իլյուզիաները խանգարում են պատերազմի նախապատրաստման դեմ իրական պայքարին: Բուրժուազիան և նրա գործակալությունն ամեն կերպ ջանում են բանվոր դասակարգի մեջ արմատացնել իրենց ձեռնտու իլյուզիաներ, այդպիսով ձգտելով բանվորական մասսաներին հեռացնել հեղափոխական պայքարից (օրինակ՝ հակամարտ, միմյանց թշնամի դասակարգերի խաղաղ համագործակցության հնարավորության իլյուզիան և այլն):

Իրավունքի սահմանափակում, իրավազրկում — Խորհրդային պետության մեջ սոցիալական պաշտպանության մի միջոց է: Նա արտահայտվում է քաղաքական և առանձին քաղաքացիական իրավունքների զրկման մեջ, այսինքն՝ ընտրական իրավունքի, ընտրական պաշտոն վարելու ի-



րավունքի (պետական և հասարակական), պատվի կոչում կրելու իրավունքի և այլն: Ըստ մեր օրենսդրության, իրավունքի սահմանափակում կարող է կիրառվել վորպես սոցիալական պաշտպանության լրացուցիչ և վորպես ինքնուրույն միջոց (տես ՌՍՖԽՀ Քրեական կոդեկսի 34-րդ հոդվածը): Այդ նշանակում է, վոր առաջին դեպքում, բացի բանտարկության ժամանակամիջոցից, դատարանի վճռի մեջ մատնանշվում է իրավազրկման լրացուցիչ ժամկետը: Հետևապես, բացի բանտարկության ժամանակամիջոցից, բանտարկությունից հետո ել տվյալ անձնավորության վրա տարածվում է լրացուցիչ իրավազրկումը դատարանի վճռի մեջ մատնանշված ժամկետի համաձայն: Այդ լրացուցիչ իրավազրկումը կարելի յե տալ հինգ տարուց վոչ ավել (տես ՌՍՖԽՀ Քրեական կոդեքսի 32-րդ հոդվածը և մյուս դաշնակից հանրապետությունների քրեական կոդեքսի համապատասխան հոդվածները):

Ունիֆիկացիա — Միավորում, ավելի ճիշտ, զանազան բաների բովանդակ կերպով միասնական տեսքի բերելը, այն ինչ, վոր կոչվում է «մի սանրի տակ խուզել»:

Այդ խոսքն առանձնապես լայն տարածված է և հատուկ իմաստ է ստացել ֆաշիստական Գերմանիայում, ուր հիտլերյան դիկտատուրայի հաստատումից հետո յերկիրը վեր է ածված համատարած ֆաշիստական կազարմայի, ուր ֆելդֆեբելական մուշթամարտը և բութ սոլդաթական վոգին ճանաչված է վորպես կարևոր և միակ արժեքավոր ունիֆիկացված «կուլտուրա»: Այն մասին, թե ունիֆիկացումն ինչպես են գնահատում գերմանական ժողովրդական մասսաները, բավականին պարզ խոսում է այն փաստը, վոր ֆաշիստական ունիֆիկացիայից հետո գերմանական թերթերի տիրաժը մի քանի անգամ կրճատվել է և ընթերցողների բացակայության հետևանքով մի շարք թերթերի և ժուռնալների զգալի մասը փակվել են:

